


№ 24 Կիրակի 31 մայիսի

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ
1915

Կիրակի 31 մայիսի № 24


# ՓԱՅԼԱԿ


Քաղաքական, հասարակական ու գրական լրագիր

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ԵՒ ՀԻՆԳՇԱԲԹԻ ՕՐԵՐԸ

Տարեկան գինը — 3 րուբլի, $^1/_2$ տարուանը — 1 ր. 50 կ., 1 ամս. — 35 կ.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՄԵՆ ՏԵՂ 5 ԿՈՊ

Յայտարարութիւնների համար վճարում են իւրաքանչիւր տողատեղին՝ առաջին երեսի վրայ — 20 կոպ, վերջին ,, ,, — 10 ,,

Հասցէն՝ Шуша, Редакція газеты ,,Пайлакъ". Ганджунцев. ул. домъ Костандова. Schoucha, rédaction du journal ,,Phaïlak".




## ՄԱՐԻԱՄԵԱՆ ՕՐԻՈՐԴԱՑ ԴՊՐՈՑԸ

Անվիճելի համարելով միանգամայն, որ Ղարաբաղի հայոց թեմական դպրոցի տնտեսական աննախանձելի դրութեան գլխաւոր պատճառը Շուշու Մարիամեան օրիորդաց դպրոցն է, անվիճելի և անհրաժեշտ ենք համարում միանգամայն նաև Մարիամեան դպրոցի գոյութիւնը, սակայն ոչ այն ձևով և ծաւալով, ինչպէս կայ այժմ։ Մարիամ. դպրոցն իր ներկայ վիճակով ոչ միջնակարգ է, ոչ էլ տարրական. առ այժմ չորս դասեան է, իսկ թէ ապագայում ինչ պէտք է լինի, անյայտ է և անորոշ։ Որ իւրաքանչիւր թեմ պէտք է ունենայ եթէ ոչ մի քանի, գոնէ առնուազն մի միջնակարգ դպրոց, պարզ է արևի լոյսի պէս։ Այդ պահանջն աւելի զգալի է մանաւանդ Շուշու նման մի քաղաքում, ուր գոյութիւն չունի նաև պետական միջնակարգ օրիորդաց դպրոց։ Հետևաբար միջնակարգ օրիորդաց դպրոցը Շուշում օրւայ պահանջ է։

Վաղուց արդէն ծրագրուած է բանալ Շուշում միջնակարգ օրիորդաց դպրոց, որի համար յայտնի դրամատէր Ղուկասեանը նուիրել է յատուկ շէնք և որի գոյութիւնն ապահովել է 200,000 րուբլի նուիրատուութեամբ։ Այդ դպրոցը պէտք է կոչւի Մարիամեան—Ղուկասեան դպրոց և հոգաբարձուներից մէկն էլ պէտք է լինի Ղուկասեաններից։ Եթէ մեր հոգևոր բարձր իշխանութիւնը քիչ ուշադրութիւն և լուրջ վերաբերմունք ցոյց տար դէպի այդ գործը, Մարիամ-Ղուկասեան օրիորդաց դպրոցն արդէն գոյութիւն ստացած կը լինէր հենց 1914/15 ուս. տարուց։ Պէտք էր միայն կարգաւորել այդ դպրոցի նորընտիր հոգաբարձութեան խնդիրը. հաստատել նրան իր պաշտօնում, կամ բեկանել այդ ընտրութիւնը և նորը կատարել տալ։ Սակայն մեզ անհասկանալի պատճառով 1913 թ. նոյեմբերին կատարած հոգաբարձական ընտրութիւնը մինչև այժմ մնացել է անորոշ դրութեան մէջ։ Աւելի քան $1^1/_2$ տարի է անցել այդ օրից, բայց այդ խնդիրը դեռ մնացել է անլուծելի, այն ինչ այդքան ժամանակամիջոցում կարելի էր տասը հոգաբարձութիւն ընտրել և հաստատել։

Այդ հանգամանքն առաջ է բերել թիւրիմացութիւններով լի մի կացութիւն, որին վերջ տալու համար Ղարաբաղի թեմի ժամանակաւոր կառավարիչը դիմեց վերին աստիճանի հեշտ և կտրուկ միջոցի. Մարիամեան անուանն աւելացրեց Ղուկասեան անունը և այդպիսով Մարիամեան օրիորդաց դպրոցը դարձաւ Մարիամ-Ղուկասեան. մնում էր միայն Ղուկասեանից ստանալ խոստացած 10,000 րուբ. և ամեն ինչ կատարեալ էր։ Այդպէս հաւատացած էր, աւելի շուտ ներշնչուած էր Զաւէն վարդապետը, հենց այդպէս էլ հաւատացրել էր թեմական դպրոցի հոգաբարձութեան և վերջինս սիրով և ուրախութեամբ հաստատեց Մարիամ-Ղուկասեան դպրոցի 1914/15 ուս. տարւայ բիւջէն՝ առանց կասկածելու, առանց տարակուսելու։ Սակայն և իրականութեան մէջ, ինչպէս երևում է, սարեր, ձորեր կան. իրականութիւնը եկաւ իր կոպիտ կռանով ջախջախելու միամիտների հաւատը. Ղուկասեանը մեզ անյայտ պատճառով հրաժարուել է խոստացած տասը հազարը տալ նորադարձ Մարիամ-Ղուկասեան դպրոցին։ Հասկանալի է, թէ ինչ կը զգար այս յայտարարութիւնից յետոյ Զաւէն վարդապետն և ինչ թեմական դպրոցի հոգաբարձութիւնը, որ անհամբեր սպասում էր ակնկալուած գումարին, ծածկելու կասսայում վաղուց արդէն գոյացած բացերը։ Մնում էր հաշտուել ստեղծուած դրութեան հետ և շարունակել թեմ. դպրոցի եկամուտներից բաժին հանել օրիորդաց դպրոցին։

Սակայն այսպէս շարունակելն անկարելի է. պէտք է վերջ տալ այս դրութեան. պէտք է ստեղծել մի վիճակ, որ գոհացում տայ միևնոյն ժամանակ թէ բարիքարի պահանջին և թէ թեմ. ու Մարիամեան դպրոցների շահերին։

Խաչ դնել Մարիամեան օրիորդաց դպրոցի վրայ և նրա փոխարէն ստեղծել Մարիամ-Ղուկասեան դպրոց, ոչ միայն ցանկալի չէ, այլ վնասակար է և կուլտուրական տեսակէտից մինչև իսկ յետադէմ քայլ։ Մարիամեան դպրոցը պէտք է շարունակի որպէս ինքնուրոյն ծխական դպրոց, չորս կամ հինգ տարւայ դասընթացով։ Նրա պահելու համար պէտք է գործ դնել ամեն ճիգ ու ջանք, պէտք է նրա գոյութեան և յարատևութեան համար նորանոր աղբիւրներ գտնել։ Ինչ վերաբերում է Մարիամ-Ղուկասեան օրիորդաց միջնակարգ դպրոցին, նա պէտք է կազմի մի տեսակ շարունակութիւն մեր ծխական դպրոցների, որտեղից աւարտող աշակերտները կարողանան շարունակել իրենց ուսումն այդ դպրոցում։ Նպատակայարմար կը լինի այդ տեսակէտից, որ նա առ այժմ պատրաստական բաժանմունքներ չունենայ և սկսի առաջին դասարանից. իսկ ապագայում, երբ պահանջ կը լինի, կունենայ նաև պատր. բաժանմունքներ։ Բաժանմունքների անհրաժեշտութիւնը Մարիամ-Ղուկասեան դպրոցի համար մենք չենք ժխտում, այլ յարմարւում ենք նրա նիւթական դրութեան։ Աւելի լաւ է կանոնաւոր դպրոց պահել առանց պատրաստական բաժանմունքների, քան մի կերպ քարշ տալ դպրոցի գոյութիւնը բաժանմունքներով հանդերձ։ Մեր առաջարկած նախագիծը ժամանակաւոր բնոյթ է կրում, որը պայմանաւորուած է նիւրատուութեան չափով ու քանակով։ Վերջացնելով մեր ասելիքը՝ կրկին անգամ շեշտում ենք, որ թեմական դպրոցի հոգաբարձութիւնը, որպէս ամենից աւելի շահագրգռուած այդ խնդրում, պէտք է առանց յետաձգելու, շուտափոյթ կերպով աշխատի վերջ տալ այդ խնդրին, որով ազատած կը լինի մի կողմից թեմական դպրոցն ակամայ խնամակալի պատասխանատուդերից և Մարիամեան ու Մարիամ-Ղուկասեան դպրոցների վիճակը կորոշի միւս կողմից։

Դեմոս

---

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆԻ ԲԱՑՈՒՄԸ

Շուշու թեմական դպրանոցի հոգաբարձութիւնը որոշել է առաջիկայ ուսումնական տարուանից բաց անել եօթներորդ դասարան։ Այսպիսով լուծւել է մի հարց, որ մեծ նշանակութիւն ունի մեր հինաւուրց թեմական դպրանոցի կեանքում։ Այդ քայլով հոգաբարձութիւնն իւր խնամքին յանձնուած դպրո-

№ 35 Հինգշաբթի 9 յուլիսի

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ 1915

Հինգշաբթի 9 յուլիսի № 35

# ՓԱՅԼԱԿ

Քաղաքական, հասարակական ու գրական լրագիր

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ԵՒ ՀԻՆԳՇԱԲԹԻ ՕՐԵՐԸ

Տարեկան գինը — 3 ռուբլի, $1/2$ տարուանը — 1 ր. 50 կ., 1 ամս. — 35 կ.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՄԵՆ ՏԵՂ 5 ԿՈՊ.

Յայտարարութիւնների համար վճարում են իւրաքանչիւր տողատեղին՝ առաջին երեսի վրայ—20 կոպ., վերջին ,, ,, —10 ,,

Հասցէն՝ Шуша, Редакція газеты ,,Пайлакъ". Ганджунцев. ул. домъ Костандова. Schoucha, rédaction du journal ,,Phaïlak".







### ՊԱՐՍԿԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԸ

Դեռ եւս պատերազմից շատ առաջ Պարսկաստանը դարձել էր մրցութեան ասպարէզ զանազան պետութիւնների քաղաքական-տնտեսական գերիշխանութեան։ Այդ մրցումն աւելի եւս սուր բնաւորութիւն ստացաւ համաեւրոպական պատերազմի օրերում, երբ թիւրք-գերմանական գործակալները հեղեղելով Պարսկաստանը, անդուլ պրոպագանդ են մղում, պարսիկ մասսաների հայրենասիրական ու կրօնական զգացմունքներն են գրգռում և վերջապէս բարձր կառավարական ու ազնուական շրջաններում թէ ոսկով և թէ լաւագոյն հեռանկարի խոստումներով դաւեր են լարում անգլիական և ռուսական պետութիւնների դէմ։ Անգլիան և Ռուսաստանը, որոնք մի ժամանակ անհաշտ ախոյեաններ էին երեւում պարսկական սահմաններում և յարատև փոխարարձ մրցման ու պայքարի մէջ էին, քաղաքական հաստատված պայմանների թելադրութեան ներքոյ ստիպուած եղան վերջ ի վերջոյ համաձայնութեան գալ և բաժանել Պարսկաստանը ազդեցութեան երկու շրջանների՝ հիւսիսային և հարաւային. այնուհետև այդ երկու հզօր պետութիւնները փոխադարձ համաձայնութեամբ սկսեցին իրենց ձեռքումը պահել Պարսկաստանի բաղդը և յաջողութեամբ պայքարել թէ գերման և թէ թիւրք ազդեցութիւնների ու դաւերի դէմ։ Ահա այդ է պատճառը, որ Պարսկաստանը մինչև այժմ, ներկայ պատերազմի արիւնոտ օրերում, չի կարողանում դուրս գալ քաղաքական տագնապի տևողական դրութիւնից։ Ամբողջ ժամանակ երկրումը տիրում է խուլ խմորումն ու դաւադրական տրամադրութիւն շնորհիւ գերման և թիւրք գործակալների եռուն ագիտացիայի. ամբողջ ժամանակ անգլօ-ռուսական դիպլօմատիան ճիգեր է թափում զսպելու Պարսկաստանը և թոյլ չտալու, որ նա նետուի պատերազմ յօգուտ Գերմանիայի և Թիւրքիայի։ Եւ իրօք դա շատ դժուարին գործ է, քանի որ Պարսկաստանի քաղաքական կուսակցութիւնների և բարձր շրջանների, նոյն իսկ մէջլիսի տրամադրութիւններն ակնյայտնի մեր թշնամիների կողմն է. մի տրամադրութիւն, որ երբեմն սուր ընթացք է ստանում, նայելով, թէ պատերազմական գործողութիւնների յաջող բաղդն արևելքում և արևմուտքում, ո՛ր կողմն է թեքւում։ Այդպէս էր տրամադրութիւնը մօտաւորապէս ապրիլ ամսում, թիւրք զօրքերը գրաւեցին Քիրմանշահը. և այդպէս է ըստ երևոյթին այժմ, երբ նկատի առնենք արևմտեան ռազմաբեմի գործերի վիճակը։ Ինչպէս լրագիրներից գիտենք, մէջլիսը իւր մեծամասնութեամբ խոչընդոտ է հանդիսանում Էյ-ուդ-Դովլէի կաբինետին, որը ստիպուած եղաւ վերջապէս հրաժարուելու և Շահի առաջ դրել էր նոր մինիստրութիւն կազմակերպելու հարցը։ Պէտք է ասած, որ Էյն-ուդ-Դովլէն իւր քաղաքական ծրագրով ու հայեացքներով չէզոք անձն էր, և ամեն ջանք անում էր, որպէսզի Պարսկաստանը չէզոք լինի և արկածախնդիր քաղաքականութեան զոհ չգնայ թիւրք-գերմանական ինտրիգներից։ Էյն-ուդ-Դովլէի քաղաքականութեանը համամիտ էին ռուս և անգլիական դեսպանները։ Սակայն վերջին ժամանակ, մէջլիսը, որ մինչև այդ նոյնպէս ձգտում էր չէզոքութիւն պահպանել հանդէպ պատերազմող պետութիւնների, յանկարծակի փոխել է իւր տրամադրութիւնը և ակնյայտնի գերմանասիրական և թիւրքամոլ ձգտումներ է ցոյց տալիս։

Չնայած տրամադրութեան այս թեքմանը և չնայած, որ քիչ էր մնացել, Շահը մինիստրական կաբինետի գլուխ նշանակէր գերմանացիների ցանկալի Մուստաֆա-ուլ-Մամալէքին, այնուամենայնիւ անգլօ-ռուսական ազդեցութիւնը կարողացաւ կասեցնել այդ քայլն և տանել քաղաքական յաղթանակը։ Այժմ մինիստրական կրիզիսը Պարսկաստանում տակաւին վերջացած չի կարելի համարել. բայց և այնպէս նորագոյն տեղեկութիւնների համաձայն, թւում է, որ Էյն-ուդ-Դովլէն վերստին պիտի ստանձնէ Շահից մինիստրական նախագահութիւնը և շարունակի իւր չէզոք քաղաքականութիւնը, որ այնքան ձեռնտու չէ գերման-թիւրքական շահերին.

Խօսք չկայ, որ Պարսկաստանը ռազմական տեսակէտից ոչինչ չի ներկայացնում, որ վտանգ սպառնար Ռուսաստանին կամ Անգլիային. նրա ոյժը պատերազմի նժարը ոչ մի դէպքում չի թեքի այս կամ այն կողմը։ Պարսկաստանը լոկ քաղաքական նշանակութիւն ունի, միայն քաղաքական ազդեցութեան խթան է ռուս անգլիական համաձայնութեան համար մօտաւոր ասիական ժողովրդների վրայ։ Պարսկաստանի չէզոքութիւնը մի միջոց է, որ Անգլիայի և Ռուսաստանի ձեռքերը ազատ է պահում այս մասում զուր տեղը զօրքեր ու ռազմամթերքներ կենտրոնացնելու, որ ներկայ վայրկեանում այնպէս անհրաժեշտ են իսկական ռազմաբեմերում և ոչ թէ պարսիկ ժողովրդի և սրան յարակից կիսավայրենի ցեղերի հետ ժամավաճառ լինելու և զուր տեղը գրաղուելու։

Պարսկաստանը չէ, որ լուծելու է արևելեան հարցը. այդ մնանկ պետութիւնը, այլասերւած կառավարութիւնը չէ, որ պիտի յանդգնի իւր պատերազմական գործողութիւններով յօգուտ թիւրք-գերմանական շահերի պայքարելու երկու համաշխարհային հզօր պետութիւնների դէմ։

№ 39 Հինգշաբթի 23 յուլիսի



ՄԻԱՑԻՆ ՏԱՐԻ
1915

Հինգշաբթի 23 յուլիսի № 39

# ՓԱՅԼԱԿ

Քաղաքական, հասարակական ու գրական լրագիր

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ԵՒ ՀԻՆԳՇԱԲԹԻ ՕՐԵՐԸ.

Տարեկան գինը — 3 րուբլի, $^1/_2$ տարուանը — 1 ր. 50 կ., 1 ամս. — 35 կ.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐՆ ԱՄԵՆ ՏԵՂ 5 ԿՈՊ.

Յայտարարութիւնների համար վճարում են խմբագրութիւնն տողատեղին՝ առաջին երեսի վրայ—20 կոպ, վերջին „ „ —10 „

Հասցէն՝ Шуша, Редакція газеты „Пайлакъ". Ганджунцев. ул. домъ Костандова. Schoucha, rédaction du journal „Phaïlak".





ՄԱՐԳԱՐԻՏ, ՄՈՒՍԵՂ, ԲԱՐՍՈՒՀԻ և ՍԻՐՈՒՀԻ ԲԷԳԼԱՐԵԱՆՆԵՐԸ սրտի անհուն կսկիծով յայտնում են հարազատներին և ծանօթներին իրենց թանգագին կորստի, առաջինի՝ ամուսնու, վերջինների ջերմապէս սիրած հօր

ՄԱՂԱՔԻԱ ԳԱՆԻԷԼԵԱՆ ԲԷԳԼԱՐԵԱՆԻ

մահուան մասին, որ տեղի ունեցաւ 21-ին յուլիսի։ Յուղարկաւորութիւնը սեփական բնակարանից—Առաքելեան փողոց № 22 դէպի Վերին Թաղի ս. Յովհաննու Մկրտիչ եկեղեցին տեղի կունենայ այսօր, 23-ին յուլիսի, առաւօտեան ժամը 10-ին։ Թաղումը ս. պատարագից յետոյ՝ Ներքին հանգստարանում։

## ՏԵՍՉԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Պ. Ղազար Տէր-Ղազարեանի հրաժարումով նորից թափուր է տեսչական պաշտօնը և նոր տեսուչ հրաւիրելու հարցը դրուած է Շուշու հասարակութեան և թեմական դպրոցի հոգաբարձութեան առջև։ Դեռ վաղաժամ է քննութեան առնել այն բոլոր հանգամանքները, որոնք աննպաստ գործերին պ. Ղ. Տէր-Ղազարեանի դպրոցական գործունէութիւնը մեր միջավայրում։ Կրքերը դեռ շատ են լարուած և հրաժարման տպաւորութիւնը շատ է ուժեղ թէ հակառակորդ և թէ բարեկամ շրջաններում։ Նրա տեսչական գործունէութեան գնահատութիւնը տալու համար հարկաւոր է դեռ ժամանակ և հանգիստ տրամադրութիւն։ Առայժմ, ամենալաւ վերաբերմունքը հանդէպ մեր կրթական գործի և մեծարանքը թերևս ընդմիշտ մեզնից հեռացող դպրոցական գործչի, թւում է, հենց այն պէտք է լինի, եթէ նրա արժանաւոր յաջորդի հարցը դեկավարող սկզբունք ունենանք մեզ համար։ Այսպէս կամ այնպէս, մեր ամենակարևոր հիմնարկութիւններից մէկի գլխաւոր ղեկավարի ընտրութեան հարցն է դրուած և պահանջում է լուծումն։

Տեսչական խնդիրը մեր դպրոցական իրականութեան ամենացաւոտ խնդիրներից մէկն է, որին պէտք է մօտենալ ամենայն զգաստութեամբ։ Անկարելի է, մեր սակաւաթիւ հաստատութիւններից մէկի բախտը յանձնել խմբագրական պատահական անձնաւորութեան, այլապէս վտանգած կը լինենք լայնածաւալ թեմի կրթական կուլտուրական գործը։ Մի կրթական հաստատութիւն, որի պատերի մէջ դարբնւում է մեր վաղուայ ինտելիգենցիան, հարկաւոր գաւառական գործիչները, արժանի է ամենայն աչալրջութեան։

«Փայլակը» որպէս հասարակական օրգան, ունի իր ասելիքը և այսօր պարտաւոր է զգում պարզել իր տեսակէտը՝ տեսչական խնդրի նկատմամբ։

Գաղտնիք չէ, որ թեմական դպրոցները առհասարակ շատ են անհրապոյր. բոլոր միջնակարգ դպրոցների շարքում և պատճառը նրա իրաւական հանգամանքներից զուրկ լինելն է։

Մեր հասարակութեան միջակ խաւերն անգամ մեծ դժկամակութեամբ են իրենց զաւակներին մեր միակ միջնակարգ կրթարաններն ուղարկում։ Կամայ թէ ակամայ դպրոցը մնում է ստորին խաւերի և գիւղացիութեան համար միմիայն, որոնք հանգամանքը իր առանձնայատուկ կնիքն է դնում դպրոցի վրայ։

Եթէ թեմական դպրոցների իրաւունքի խնդիրը դեռ ևս դրուած չէ, սակայն հրապարակի վրայ է այն իսկական միջնակարգ դպրոց դարձնելու խնդիրը։ Թեմական դպրոցները այսուհետ այնքան պատրաստութիւն պիտի տան իրենց սաներին, որչափ գիմնազիաները, իսկ այնուհետ, իրաւունքի խնդիրը ինքն ըստ ինքեան կը լուծուի։ Այդ հնարաւոր կը լինի այն դէպքում, երբ թեմական դպրոցի ղեկավարը իր կրթութեամբ և հայեացքներով համապատասխան արժանիքներ կունենայ։ Մեր ապագայ տեսուչը պէտք է լինի անպայման ռուսական կրթութեամբ, ծանօթ ռուս կեանքին, գրականութեան, գիտական պետական իրաւունքին ու լեզուին։ Բաւական է, որքան մեր դպրոցները լցրինք գերմանական՝ կասկածելի արժանիքների տէր փիլիսոփայութեան դօքտորներով և աստուածաբաններով։

Մեր թեմական դպրոցների ղեկավար շրջանների անուղղելի սխալներից մէկն էլ այն հայեացքն է եղել, թէ հոգևոր դպրոցը կարող է ունենալ նաև հոգևորական տեսուչ։ Հոգևորականը, որչափ էլ լայն ըմբռնելու լինի իր առջև դրուած խնդիրները, ուզի-չուզի, այն գունաւորելու է իր դասի հայեացքներով։ Այս անհերքելի է։ Այսուհետ այսպիսի դրութիւն այլևս անհանդուրժելի պիտի լինի և աշխարհիկ գիտութիւնը պիտի թագաւորի մեր դպրոցներում։ Նայեցէք մեր թեմական դպրոցի պատմութեանը։ Մինչդեռ Մեսրոպ, Տիրայր, Բենիկ և Ներսէս վարդապետների տեսչութեան շրջանը ամենաողբալին է, ռուսական կրթութեան տէր տեսուչներ՝ Եղիշէ Մադաթեանի և Լևոն Սարգսեանի տեսչութեան շրջանները դեռ մինչև օրս էլ խղճալ են համարւում։ Նոր տեսուչը հոգևորական չպիտի լինի.

Հոգևորական տեսուչների շրջանը յայտնի է իր խառնակ դրութեամբ և դպրոցական ծրագրի անվերջ փոփոխութիւններով՝ յօգուտ եկեղեցական-հոգևոր գիտելիքների և ի վնաս բնական գիտութիւնների։ Մեր ապագայ տեսուչը պէտք է լինի հաստատուն համոզմունքների տէր. նա պէտք է խորապէս ծանօթ լինի մեր լեզուին, պատմութեան, գրականութեան և իրազեկ՝ մանկավարժական աշխարհի անցուդարձն ըմբռնելու։

Տեսչական հարցում չպիտի անգիտանալ նաև մանկավարժական խորհուրդի ձայնը։ Ճիշտ է, հրահանգը մանկավարժական խորհրդին քիչ բաժին է յատկացրել այդ գործում, սակայն դպրոցական կեանքի խաղաղութիւնը և ուսուցչական կազմի ու տեսչի համերաշխ գործունէութիւնը ապահովելու համար անպայման կարևոր է մեծ ուշք դարձնել մանկավարժական խորհրդի ձայնին և որովհետև թեմական դպրոցի ուսուցչական կազմը լրիւ է, մեզ թւում է, թէ ամենայարմար ելքը ստեղծուած դրութիւնից հենց այն կը լինի, եթէ տեսուչը ընտրուի այժմեան կազմից։

Դրսից տեսուչ հրաւիրելու հարցը կապուած է մեծամեծ բարդութիւնների հետ։

## ԻՆՏԵԼԻԳԵՆՏ ՈՒԺԵՐԻ ԿԱՐԻՔԸ ԳԻՒՂԵՐՈՒՄ

II.

Ղարաբաղի թեմական դպրոցը, որպէս ամբողջ թեմի միակ միջնակարգ դպրոց, անկարող է եղել ցայժմ կատարել գէթ բաւարար չափով իր վրայ դրուած պարտականութիւնը—ինտելիգենտ գործիչներ մատակարարել գիւղերին։ Միջավայրի աննպաստ պայմանները մի կողմից, դրսի աշխարհի սէրը և հրապոյրը միւս կողմից ձգել են Ղարաբաղի ինտելիգենցիային դէպի հեռուն, դէպի օտար երկնակամար։ Գիւղերում գործող սակաւաթիւ ինտելիգենտ ուսուցիչներն էլ մի կերպ քաշ են տալիս իրենց կեանքը, դժգոհ թէ իրենցից և թէ իրենց շրջապատից, առանց բարոյական ներքին կապ զգալու գիւղի և իրենց գործի մէջ և միշտ էլ ականկառոյց սպասելով աւելի յարմար վայրում ձեռնտու պաշտօն գտնելու։ Չենք մեղադրում, բայց դա փաստ է։ Գիւղական ինտելիգենտներ, շահերով ու գաղափարով կապուած իրենց գիւղերի և հողի հետ, մշտական բնակութիւն հաստատած իրենց ծննդավայրում, չկան, կամ համարեա թէ չկան և չեն էլ կարող լինել, քանի որ գիւղը շատ քիչ աշակերտութիւն է կա-

№ 41 Չորեքշաբթի 29 յուլիսի ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ 1915 Չորեքշաբթի 29 յուլիսի № 41

# ՓԱՅԼԱԿ

Քաղաքական, հասարակական ու գրական լրագիր

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ԵՒ ՀԻՆԳՇԱԲԹԻ ՕՐԵՐԸ

Տարեկան գինը — 3 ռուբլի, ½ տարուանը — 1 ր. 50 կ., 1 ամս. — 35 կ.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՄԵՆ ՏԵՂ 5 ԿՈՊ.

Յայտարարութիւնների համար վճարում են իւրաքանչիւր տողատեղին՝ առաջին երեսի վրայ—20 կոպ, վերջին „ „ —10 „

Հասցէն՝ Шуша, Редакція газеты „Пайлакъ". Ганджунцев. ул. домъ Костандова. Schoucha, rédaction du journal „Phaïlak".

# ՕԳՆԵՑԷՔ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ



## Հ Ր Ա Ւ Է Ր

Նորին Կայսերական Մեծութիւն Կովկասի Տէր Փոխարքայի տնօրինութեան և Գանձակի Նահանգապետի կարգադրութեան համաձայն Շուշու գաւառը, Շուշի քաղաքով հանդերձ, պարտաւորւում է պահել 15 հազար հայ փախստականներ. ուստի քաղաքիս հայ համայքն, յուլիսի 30-ին, հինգշաբթի-առաւօտեան ճիշտ ժամը 9-ին «Եղբ. օգնութ.» կոմիտէի կողմից հրաւիրւում է թեմական հոգ. դպրանոցի դահլիճը ժողովի՝ խորհրդակցելու փախստականների ընդունելութեան պահպանման ձևերի մասին։

Պատուաւոր Նախագահ՝ Զաւէն վարդապետ
Նախագահ՝ Գերասիմ Մելիք-Շահնազարեան

## ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐ!

Հինգշաբթի, ամսոյս 30-ին, Ղարաբաղի «Եղբայրական Օգնութեան» կոմիտէի յատուկ կազմած խմբակները շրջելու են քաղաքը, իրեր ժողովելու

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Կարիք է զգացւում հագուստի, տեղաշորի, թէյի, շաքարի և սապնի։ Պատրաստեցէք, ով ինչ կարող է, շրջող խմբերին յանձնելու կամ անձամբ ուղարկելու կոմիտէի մթերապահեստը՝ թեմական դպրոցում, ուր յղած նիւթերը ընդունւում են ժամը 10-ից մինչև 1-ը։

«Եղբայրական Օգնութեան» կոմիտէ.

## ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Հայրենակիցներ!

Համաշխարհային պատերազմի սոսկալի արհաւիրքներն ոչ մի երկրում այնքան աւեր չգործեցին, որքան Տաճկահայաստանում. ոչ մի տեղ մարդ արարածը այնպիսի բազմատեսակ ու անլուր տանջանքների չի ենթարկւել, որքան տաճկահայը. ամբողջ ինն ամսւայ ընթացքում հրի ու աւերածութեան մատնեցին տաճկահայի շէն գիւղերն ու աւանները, աւերեցին ու պղծեցին վանքերն ու եկեղեցիները, խողխողեցին երիտասարդները, կոտորեցին անմեղ մանուկները ու կանայք, և դառն ամայութեան մատնեց հայի բնակավայրը. թշնամու անագորոյն սուրը չի խնայում ոչ ոքի։

Եւ ահա հայի արեամբ ցօղուած այդ երկրից, տանջանքի ու դժոխքի փոխարինուած վաթանից կենդանի մնացած ծերունիներ, կանայք ու երեխաներ սոսկ իրանց կեանքն ազատելու համար դիմում են դէպի մեր երկիրը. ռուս կառավարութիւնն իւր հոգածութեան առարկայ է դարձրել և հայ գաղթականներին պատսպարելու խնդիրը։ Կովկասի զանազան վայրերի հայերն իրանց ամբողջ ոյժերը լարելով մինչև այսօր պահպանել են մեծ քանակութեամբ հայ գաղթականներ, միայն Ղարաբաղի հայ ժողովուրդն է եղել ազատ իւր յարկի տակ պատսպարելու այդ թշւառներին երկրի հեռաւորութեան պատճառով։ Բայց ներկայ սոսկալի պատերազմի հետևանքները ցոյց են տալիս, որ կեանքի փրկութեան համար երկրի հեռաւորութիւնը նշանակութիւն չունի և շուտով մօտ 23 հազար հայ գաղթական պիտի գայ Ղարաբաղի և Ջիվանշիրի կողմերը, ուր նա պիտի պատսպարւի, մինչև աւերակ երկրում խաղաղութիւնը վերականգնւի, որից յետոյ նա պիտի վերադառնայ իւր հայրենիքը։

Հայրենակիցներ! կատարելով մեր պարտականութիւնը մեր ընդհանուր հայրենիքի մեծն Ռուսաստանի առաջ, որ մեզ վրայ է դնում բարոյական մեծ պարտականութիւն, մենք պէտք է ամենայն սիրով ընդառաջ գնանք մեր եղբայրների օգնութեան գործին և զետեղենք մեր երկրում այդ բոլոր գաղթականներին և հնարաւորութիւն տանք դոցա ապրելու մեր հիւրասէր յարկի տակ մի որոշ ժամանակ. մենք պէտք է ջերմ սիրով և գրկաբաց ընդունենք թշւառութեան և հալածանքի մատնուած մեր եղբայրներին. մենք պէտք է սրբենք նրանց արցունքները, ամոքենք նրանց վէրքերը և սփոփենք վշտաբեկ սրտերը։ Ղարաբաղի հայը միշտ յայտնի է եղել իւր հիւրասիրութեամբ և այժմ էլ նա պէտք է լայն բաց անէ իր տան դռները տաճկահայի առաջ։

Կովկասի տէր Փոխարքայի կարգադրութեամբ մեր կողմերը պէտք է գան 23 հազար գաղթական. իւրաքանչիւր տան պիտի տեղաւորել մօտ 2 գաղթական. այդ գործը գլուխ բերելու համար տեղական ոստիկանութեան ներկայացուցիչների հետ պիտի գործեն և Ղարաբաղի հայոց «Եղբայրական օգնութեան» կոմիտէի լիազօրները։

Ուստի Ղարաբաղի հայկական կոմիտէն այս ծանր և դժւարին րոպէում դիմում է հայ ժողովրդին սիրով յանձն առնել գաղթականներին պահպանելու հոգսը, թէ դրամով և թէ մթերքներով օգնութեան գալ հայկական կոմիտէին, որպէսզի հնարաւոր լինի քաղցի ու տանջանքի ենթակայ հայ գաղթականների կեանքը ազատել կորստեան ճանապարհից։

Ղարաբաղի «Եղբայրական օգնութեան» կոմիտէ

## ՆՐԱՆՔ ԳԱԼԻՍ ԵՆ...

Շարան-շարան, մեծ ու փոքր, որբ ու այրի, հիւանդ ու առողջ, բոլորը աղքատ, նրանք գալիս են... Մահու սարսափի կնիքը ճակատին, յուսահատութեան թոյնը սրտում, անարդարութեան բովում տապակուած, նրանք քարշ են գալիս։ Որտեղից էք գալիս, ո՞վ դուք, թշւառներ, մարդկային արիւնարբութեան ու ագահութեան դուք անմեղ զոհեր... Նրանք գալիս են մի երկրից, որ երբեմն դրախտ էր կոչւում, իսկ այժմ դժոխքը նոյնիսկ կը նսեմանայ այդ երկրի տեսքից... Կրակը, արիւնը, սովը, մահը ու սարսափը ձեռք-ձեռքի տուած հազար գալարումներով մեծ պար են պարում այդ դաժան վայրում... Ահեղ քրքիջով նրանք սաւառնում են քաղաքից դէպի գիւղ, գիւղից դէպի դաշտ, դաշտից դէպ անտառ ու հայ անունն կրող արարածներ որոնում, որ խեղդեն նրան, արիւնը ծծեն, դիակը յօշոտեն ու նրա շուրջը մեծ խնջոյք սարքեն...

Տեսե՞լ էք դուք օձի երախից ազատուած ճնճղուկին, տեսե՞լ էք դուք բոցերի միջից դուրս ընկած խեյակորոյսին, դիտե՞լ էք դուք ծովի յորձանքներից ափ նետուած կիսակենդան դիակը, վերջապէս տեսե՞լ էք դուք մահուան որկորից ազատուած մարդուն... Ոչ, դուք չէք տեսել, սակայն կը տեսնէք. դրանց շարաններն են, որ ողողում են ամբողջ Կովկասը, դրանց ալիքների մի յորձանքն է, որ այժմ զարնւում է Ղարաբաղի լեռնոտ կրծքին։

Ղարաբաղցիներ, գէթ մի վայրկեան սլացէք մտքով դրախտից—դժոխք դարձած երկիրը, գէթ մի րոպէ երևակայեցէք, թէ դուք էք ծնունդ այդ երկրի ու յետոյ մտածեցէք՝ պէ՞տք է օգնել այդ թշւառներին, թէ ո՞չ։

Օգնեցէք նրանց... մեղմացրէք նրանց վշտերը, հանգիստ տւէք նրանց խոնջացած ոսկրներին։



№ 56 Կիրակի 27 սեպտեմբերի ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ 1915 Կիրակի 27 սեպտեմբերի № 56

# ՓԱՅԼԱԿ

Քաղաքական, հասարակական ու գրական լրագիր

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ԵՒ ՀԻՆԳՇԱԲԹԻ ՕՐԵՐԸ

Տարեկան գինը — 3 ռուբլի, ½ տարուանը — 1 ր. 50 կ., 1 ամս. — 35 կ.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՄԵՆ ՏԵՂ 5 ԿՈՊ.

Յայտարարութիւնների համար վճարում են իւրաքանչիւր տողատեղին՝ առաջին երեսի վրայ—20 կոպ, վերջին ,, ,, —10 ,,

Հասցէն՝ Шуша, Редакція газеты ,,Пайлакъ''. Ганджунцев. ул. домъ Костандова. Schoucha, rédaction du journal ,,Phaïlak''.







## ՍԵՐՄԱՑՈՒԻ ԿԱՐԻՔԸ

Մէկը միւսին յաջորդող սովումները, որ տեղացին Թշւառ տաճկահայի գլխին, ժամանակ և հնարաւորութիւն չտւին մեզ հարկաւոր ուշադրութիւն դարձնելու կովկասահայ գիւղացուն այս տարի վիճակւած անմխիթար կացութեան վրայ։ Երկարատև անձրևները, կարկտի և ցրտահարութեան պատճառած վնասները հարիւր հազարների հասան. գիւղական ազգաբնակութիւնը զրկւեց իր ապրուստի միջոցներից և կիսաքաղց օրեր է անցկացնում սպասելով դրսից օգնութիւն ստանալու։ Աւելի ցաւալին այն է, որ գիւղական աշխատաւոր մասսան, հողագործ դասը անկարող է եղել գէթ ցանածն ստանալ, գոնէ սերմացու վերցնել եկող տարւայ համար։ Անշուշտ նա մի կերպ քաշ կը տայ իր կեանքն ու գոյութիւնն այս տարի, հաւանականաբար նա վաճառքի կը հանի, սրտի անհուն ցաւով, իր օգնական եզներին, ունեցած չունեցածը. սակայն ինչ պիտի անի եկող տարի, երբ ոչ հնձելու բան կունենայ, ոչ էլ ծախու անասուն։ Ապագայի վիճակն աւելի սոսկալի է, աւելի անտանելի։

Սովորական տարիներում գիւղացու տնտեսական տագնապալի վիճակը անհրաժեշտօրէն իր վրայ կը բևեռէր մեր ուշադրութիւնը, նրա լացն ու հառաչանքն արձագանք կը գտնէին մեր սրտերում. Սակայն դժբախտաբար այս արիւնոտ տարին այնքան բազմակողմանի ու մէկը միւսին գերազանցող ցաւերի հանդէպ է կանգնեցրել մեզ, որ մենք ակամայ գանցառութեան ենք տւել և անուշադրութեան մատնել մեր աշխատաւոր գիւղացիութեան ծով կարիքները և ծայրայեղ անօգնական վիճակը։ Կովկասահայ ինտելիգենցիան, մեր բարեգործական ու այլ բարենպատակ ընկերութիւններն անհրաժեշտօրէն զբաղւած և կլանւած են գաղթականական խնդրով և կովկասահայ գիւղացուն թոյլ է միայնակ ու անօգնական տապակւել իր սեփական ցաւերով, լաց լինել իր դժբախտ վիճակը։

Սակայն որքան էլ իրաւացի լինի և բանէի պահանջող գաղթականների օգնութեան խնդիրը, այնուամենայնիւ մենք պարտաւոր ենք մտածել նաև մեր քթի տակ գտնւող թշւառացածների վիճակի մասին, հոգ տանել նաև նրանց դրութեան թեթևացման մասին։ Եթէ անկարող ենք եղած և լինելիք գոհաբերութիւնների քանակն աւելացնելու այն չափով, որ կարողանանք բաւարարութիւն տալ նաև բնութեան արհաւիրքների ենթարկւած և անբերրիութիւնից վնասւած մեր գիւղացիութեան, գոնէ պէտք է մինիմալ չափով հասնենք նրան օգնութեան, կարողանանք ժամանակին սերմացու մատակարարել նրան, ապահովել նրա եկող տարւայ ապրուստը։ Սերմացուի մատակարարումը և՛ անհրաժեշտ և՛ անհետաձգելի է. այլապէս կը քայքայւի գիւղացիութեան տնտեսութիւնը և մենք եկող տարի կանգնած կը լինենք շատ աւելի մեծ զոհաբերութիւնների պահանջի առջև։

Այդ տեսակէտից գովելի է Բագւի Կուլտուրական Միութեան ձեռնարկութիւնը. Թէև չնչին չափով, համեմատած կարիքի հետ, բայց և այնպէս նպատակադրել է օգնութեան հասնել անբերրիութիւնից վնասւած և աշխատանքի հնարաւորութիւնից զրկւած գիւղական ընտանիքներին։ Այդ նպատակով 5000 ռուբլի տրամադրել է պատերազմի «Եղբայրական օգնութեան» կոմիտէին՝ սերմացու գնելու և բաժանելու կարիքաւոր գիւղացիներին։ Ցանկալի է, որ Կուլտուրական Միութեան ձեռնարկն և օրինակը հետևողներ ունենար, որով զգալի չափով դիւրութիւն տրւած կը լինէր գիւղացիութեան վերականգնել իր տնտեսութիւնը, ազատել եկող տարւայ սովի ճանկերից։ Մեր առաջնակարգ պարտականութիւններից մէկը պէտք է լինի ուրեմն՝ ապահովել գիւղացիութեան եկող տարւայ ապրուստի միջոցը, տալ նրան հարկաւոր քանակութեամբ սերմացու և որքան շուտ, այնքան լաւ։

## ԲՈՒԼՂԱՐԻԱՆ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԹԱԿԱՐԴՈՒՄ

Գերմանական նենգամիտ դիւանագիտութիւնը յաջողեցրեց Բուլղարիային ևս խճճել իր ցանցերում, ինչպէս արել էր Տաճկաստանի վերաբերմամբ։ Գերման սպաներն ու ինստրուկտորներն արդէն տեղ են գրաւել բուլղարական զօրքի և շտաբի մէջ և պատրաստւում են բուլղար զօրքերն առաջնորդելու սերբիական, յունական ու ռումինական սահմանները։ Ըստ լրագրական տեղեկութիւնների Բուլղարիան պատրաստ ունի 350 հազարից բաղկացած զօրաբանակ, որից 150 հազարն ուղարկելու է Սերբիայի դէմ, իսկ մնացածը յունական ու ռումինական սահմանները։ Այդ քայլն ինքն ըստ ինքեան պարզում է Բուլղարիայի բռնելիք դիրքը և օդն են ցնդում այդպիսով Ռադոսլավովի հաւաստիացումները զինւած չեզոքութեան մասին։ Բառեակ համաձայնութեանն այժմ մնում է կտրուկ միջոցների դիմել։ Ռուսական կառավարութիւնը մի վերջնագրով արդէն պահանջել է Բուլղարիայից հեռացնել գերման սպաներին և ինստրուկտորներին, թողնել թշնամական վերաբերմունքը դէպի Ռուսաստանի դաշնակից Սերբիան. պատասխանի համար տրւած է 24 ժամ։ Սակայն դժւար թէ գերմանական դիւանագիտութեան թակարդն ընկնողը հնարաւորութիւն ունենայ աղատւելու նեք գտնել։ Հաւանականօրէն Բուլղարիան բացասական պատասխան կը տայ և այդպիսով կանգնած կը լինի ոչ միայն քառեակ համաձայնութեան, այլ և իր հարևան երբեմնի դաշնակից ու բախտակից պետութիւնների դէմ։ Ապագայի խնդիր է, թէ որքան կօգտւի Բուլղարիան իր Թագաւորի և նրա խորհրդատու Ռադոսլավովի խիզախ ձեռնարկից, հարց է նմանապէս, թէ որքան յաջողութիւն կը գտնի Գերմանիան շնորհիւ իր նոր աջակցի և օգնականի. կը կարողանայ նա արդեօք ճեղքել Սերբիան և Բուլղարիայի վրայով օգնութեան հասնել Տաճկաստանին. փաստ է սակայն, որ ֆրանսիական զօրքեր են իջել Սոլուն, Յունաստանի ափունքը, որ Յունաստանը անբարեացակամ տրամադրութեան նշան անգամ չէ ցոյց տալիս դէպի այդ կատարւածը, ուրեմն և պատրաստ է հարկաւոր ժամանակ դուրս գալ ընդդէմ Բուլղարիայի։ Այդ է հաստատում նաև Վենիզելոսի արտասանած ճառը, որով նա բացորոշ կերպով պնդում է, որ Յունաստանը դաշնակցական պարտականութիւն ունի Սերբիայի նկատմամբ, ուրեմն և հարկաւոր դէպքում դուրս կը գայ նրան օգնելու։ Ուրեմն համարձակ կերպով կարելի է ասել, որ Բուլղարիան իր անմիտ քայլով իր դէմ հանեց մի կողմից քառեակ համաձայնութեան, միւս կողմից իր հարևան պետութիւնները։ Յետ դառնալու ճանապարհները փակւած են Բուլղարիայի համար, նա դարձաւ հլու կամակատարը Գերմանիայի և սրանից յետոյ կամայ-ակամայ շարժւելու է նրա ցանկութեամբ ու թելադրութեամբ։

Նորայր

## ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐ

ՀԱՐԻՒՐ ՈՐԲ

Ի հարկէ շուշեցիները չեն կարդում

